Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

I

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

1948 № 21

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32. ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86:



## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը տոնում է աշխատանքային նոր վերելքի և հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար մեր երկրի աշխատավորների հաջող պայքարի պայմաններում, սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, արվեստի և գրականության բնագավառում սովետական մարդկանց ձեռք բերած նոր փայլուն հաղթանակների պայմաններում: Ստախանովյան շարժումը օրեցօր ծավալվելով, ընդգրկում է աշխատավորության նորանոր զանգվածներ, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորների փորձը դառնում

է ավելի ու ավելի լայն մասսաների սնանկացումը:

Սովետական էկոնոմիկայի, գիտության, գրականության և արվեստի բուռն զարգացման ցայտուն հակապատկերն է ներկայացնում կապիտալիստական երկրների էկոնոմիկան և կուլտուրան: Փակվող բազմաթիվ ֆաբրիկաներ ու գործարաններ, աշխատող ձեռնարկությունների խրոնիկական թերբեռնվածություն, գործազրկության աճում— ահա՛ կապիտալիստական աշխարհի ներկայիս դրության բնորոշ պատկերը:

Միջազգային պրոլետարիատը Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը տոնում է ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի հետագա աճման պայմաններում: Ավելի ու ավելի է ուժեղանում հակաիմպերիալիստական, դեմոկրատական լագերը, որի հիմքն են հանդիսանում ՍՍՌՄ-ը և նոր դեմոկրատիայի երկրները, ավելի ու ավելի է թուլանում իմպերիալիստական, հակադեմոկրատական լագերը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ: Դեմոկրատական լագերի ուժերի անշեղ աճումը պայմանավորված է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ստեղծված Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության



տնտեսական և ռազմա-քաղաքական հզորության ամրապնդումով:

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան համաշխարհային պատմության մեջ արմատական հեղաշրջման սկիզբը հանդիսացավ: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը հարցականի տակ դրեց կապիտալիզմի սիստեմի բուն գոյությունը, բազա ստեղծելով համաշխարհային ռևոլյուցիայի համար: «Առաջ,— ասում է ընկեր Ստալինը,— պրոլետարական ռևոլյուցիան դիտում էին իբրև տվյալ երկրի բացառապես ներքին զարգացման հետևանք: Այժմ այդ տեսակետն արդեն անբավարար է, այժմ պրոլետարական ռևոլյուցիան, նախ և առաջ, պետք է դիտել որպես իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ հակասությունների զարգացման հետևանք, որպես այս կամ այն երկրում համաշխարհային իմպերիալիստական ճակատի շղթայի ճեղքման հետևանք» (Երկեր, հատ. 6, էջ 96):

Սովետական Միության գոյությունը, իբրև համաշխարհային ռևոլյուցիայի սկիզբ ու նախադրյալ, ինչպես այդ ցույց տվեց երկրորդ համաշխարհային պատերազմը, արագացնում է իմպերիալիզմի շղթայից առանձին օղակների անջատման պրոցեսը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաստատեց մարքսիզմ-լենինիզմի անպարտելի գաղափարների գիտականությունն ու կենսունակությունը և դրանով իսկ մեծաթիվ կողմնակիցներ նվաճեց բանվոր դասակարգի շարքերում։ Մարքսիստական-լենինյան գաղափարները այժմ ամբողջ աշխարհում տիրապետել են միլիոնավոր մասսաներին և նյութական հզոր ուժ են դարձել։

Անչափ մեծ է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նշանակությունը մեր Հայրենիքի կյանքում։ Ռևոլյուցիայի նախօրյակին Ռուսաստանը օտարերկրյա կապիտալից կախման մեջ գտնվող հետամնաց ագրարային երկիր էր, արևմտյան իմպերիալիստական տերությունների կիսագաղութը։ Ժողովրդական տնտեսության մեջ վճռական դեր խաղացող մետալուրգիական արդյունաբերության 72 տոկոսը, ածխարդյունաբերության 70 տոկոսը, նավթարդյունաբերության 60 տոկոսը և էլեկտրական արդյունաբերության 90 տոկոսը գտնվում էին օտարերկրյա կապիտալիստների ձեռքում։

1913 թվականին Ռուսաստանում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող պողպատի արտադրությունը 11 անգամ պակաս էր՝ քան ԱՄՆ-ում, 8 անգամ պակաս՝ քան Գերմանիայում, 6 անգամ պակաս՝ քան



Անգլիայում, 4 անգամ պակաս՝ քան Ֆրանսիայում։ Բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ածխի հանույթով Ռուսաստանը ԱՄՆ-ից ետ էր մնում 26 անգամ, Անգլիայից՝ 31 անգամ, Գերմանիայից՝ 15 անգամ, Ֆրանսիայից՝ 5 անգամ։

Այդպիսի տնտեսական հետամնացությունը, որը Ռուսաստանի թուլության աղբյուրն էր, հասցրեց այն բանին, որ ցարական Ռուսաստանը պարտություն-պարտության հետևից կրելով առաջին համաշխարհային պատերազմում, ավելի ու ավելի մեծ կախման մեջ էր ընկնում իր անգլո-ֆրանսիական տերերից։

Հարկավոր էր այնպիսի մի ուժ, որն ընդունակ լիներ Ռուսաստանը դուրս բերելու պատերազմից և ապահովելու նրա անկախությունը։ Այդպիսի ուժ հանդիսացավ Ռուսաստանի ռևոլյուցիոն բանվոր դասակարգը և նրա հերոսական պարտիան— բոլշևիկների պարտիան։

Լենինի- Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ հաղթանակած Հոկտեմբերյան ռևոլյուցիան իշխանությունը

հանձնեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ձեռքը։

Սովետական իշխանության ավելի քան երեսնամյա գոյությունն անհերքելիորեն ապացուցեց, որ մեր երկրի համար միակ փրկությունը սոցիալիստական ռևոլյուցիան էր, իշխանությունը պրոլետարիատի ձեռքն անցնելը։ Մեկ տարի սրանից առաջ, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակին, Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված զեկուցման մեջ ընկ. Վ. Մ. Մոլոտովն ասաց. «Մի՞թե պարզ չէ, որ եթե երեսուն տարի առաջ բոլշևիկները չկարողանային մեր Հայրենիքը ազատել Կերենսկու, մենշևիկների, էսեռների, կադետների և բուրժուազիայի այլ կամակատարների ձեռքից, ապա մեր երկիրը կկորցներ իր անկախությունը»։

Մեր երկրի դրությունը հեշտ չէր ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո։ Առաջին ավելի քան երեք տարիների ընթացքում երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ հետ էր մղում օտարերկրյա ինտերվենտների հարձակումները, որոնց նպատակն էր տապալել սովետական իշխանությունը։ Հաջորդաբար ջախջախվեցին Անտանտայի երեք արշավանքները, և 1920



թվականի վերջերին քաղաքացիական պատերազմը հիմնականում ավարտվեց։

Երկիրը թևակոխեց խաղաղ զարգացման շրջանը։ Արդեն 1927 թվականի վերջերին Սովետական Միության արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը ոչ միայն հասել, այլև անցել էին նախապատերազմյան մակարդակից։ 1925 թ. դեկտեմբերին ՀամԿ(բ)Պ 14-րդ համագումարը պատմական որոշում ընդունեց մեր երկրի ինդուստրացման մասին։ Երկրի հետամնացությունն ամենակարճ ժամանակում վերացնելու համար բոլշևիկներն ընտրեցին ինդուստրացման կարճ, բայց ավելի դժվար, սովետական ուղին։ Մոբիլիզացնելով բոլոր ներքին ռեսուրսները, պարտիան և կառավարությունը գլխավոր ուշադրությունը դարձրին ամբողջ էկոնոմիկայի հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերության զարգացման վրա։ Դրանով իսկ բազա ստեղծվեց արդյունաբերության բոլոր հիմնական ճյուղերի զարգացման, այդ թվում նաև գյուղատնտեսական գործիքների ու մեքենաների լայն արտադրության համար։

Սակայն երկրի արդյունաբերական զարգացումը, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների աճումը, ֆաբրիկաների և գործարանների թվի ավելացումը հրամայաբար

պահանջում էին առաջ մղել հետամնաց գյուղատնտեսությունը, ապահովել արդյունաբերությունը հումքով, իսկ քաղաքները՝ հացով։ Անհրաժեշտ էր գյուղացուն, վերջապես, ազատել դարավոր աղքատությունից և դուրս բերել նրան միջնադարյան հետամնացությունից։ Մինչդեռ երկրի արդյունաբերությունը 1927—1928 թվականներին արդեն տալիս էր ավելի շատ արտադրանք՝ քան 1913 թվականին, գյուղատնտեսության գլխավոր ճյուղը՝ հացահատիկային տնտեսությունը կազմում էր նախապատերազմյան մակարդակի միայն 91 տոկոսը, իսկ հացահատիկային արտադրանքի ապրանքային մասը հազիվ հասնում էր նախապատերազմյան մակարդակի 37 տոկոսին։

1927 թվականի դեկտեմբերին ՀամԿ(բ)Պ 15-րդ համագումարը որոշում ընդունեց մեր երկրի գյուղատնտեսության կոլեկտիվացման մասին։ Կոլեկտիվացման հիմքի վրա մեքենայացված խոշոր գյուղատնտեսության ստեղծումը, որը մեր զարգացող ինդուստրիայի համար ապահովում էր հումքի բազան և անհրաժեշտ հացահատիկային ֆոնդի ստեղծումը, ՍՍՌՄ գյուղացիությանը դուրս բերեց սոցիալիզմի և ունևոր կյանքի ուղին։



Մեր երկրի ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման համար մղվող հետևողական պայքարում բոլշևիկների պարտիան, ընկեր Ստալինի գլխավորությամբ, ջախջախեց ժողովրդի թշնամիներին և ապահովեց մեր երկրում խոշոր արդյունաբերության ու կոլեկտիվ գյուղատնտեսության՝ սոցիալիստական էկոնոմիկայի այդ հիմքերի ստեղծումը։

Ստալինյան երեք հնգամյակներն անճանաչելիորեն կերպարանափոխեցին մեր երկիրը։ Նա դարձավ առաջավոր ինդուստրիալ երկիր՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ։ Վերջնականապես լիկվիդացվեցին շահագործող դասակարգերը։ Մեր երկրում մնացին բանվոր դասակարգը, կոլխոզային գյուղացիությունը և սովետական ինտելիգենցիան։

Երկրի կյանքում կատարված այս խոր փոփոխությունները, սոցիալիզմի վճռական հաջողությունները ՍՍՌՄ-ում, գրի առնվեցին և օրենսդրականորեն ամրապնդվեցին ՍՍՌՄ Ստալինյան Կոնստիտուցիայում, որն ընդունվեց 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, ՍՍՌՄ Սովետների 8-րդ Արտակարգ Համագումարի կողմից։

Սոցիալիստական էկոնոմիկայի բուռն զարգացման շնորհիվ արդեն 1940 թվակա-

նին մեր երկիրն արդյունաբերական արտադրանքի տեսակետից առաջին տեղը գրավեց Եվրոպայում։ ՍՍՌՄ խոշոր արդյունաբերությունը 1940 թվականին տվեց համարյա 12 անգամ ավելի արտադրանք, քան 1913 թվականին։ Իր խոշոր, մեքենայացված գյուղատնտեսությամբ ՍՍՌՄ-ն առաջին տեղը գրավեց աշխարհում։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1940 թվականին համարյա կրկնակի չափով գերազանցեց 1913 թվականի մակարդակից։

«Արտադրության այսպիսի աննախընթաց աճումը,— ասում է ընկեր Ստալինը,— չի կարելի համարել երկրի պարզ ու սովորական զարգացում հետամնացությունից դեպի առաջադիմություն։ Դա թռիչք էր, որի օգնությամբ մեր Հայրենիքը հետամնաց երկրից վերածվեց առաջավոր, ագրարայինից՝ ինդուստրիալ երկրի»։

Երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման մեծագույն հաջողությունների հետևանքով արագորեն բարձրացավ սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցությունը։ ՍՍՌՄ ժողովրդական եկամուտը 1928 թվականի 25 միլիարդ ռուբլուց 1940 թվականին բարձրացավ մինչև 128 միլիարդ ռուբլու։ Գյուղա-



տնտեսության մեջ հացահատիկի համախառն արտադրանքը 1928 թվականի 4,5 միլիարդ փթից 1940 թվականին բարձրացավ 7,3 միլիարդ փթի։ Բնակչության թիվը երկրում արագորեն աճում էր։ Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ ամրապնդվեց ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Ստալինյան հնգամյակների հաջող իրականացման և սոցիալիստական հասարակակարգի կառուցումն ավարտելու հետևանքով մեր երկրում ստեղծվել էին անհրաժեշտ նյութական ու բարոյական-քաղաքական նախադրյալներ՝ սոցիալիստական Հայրենիքի անկախությունը հաջողությամբ պաշտպանելու համար։

Սովետական ժողովուրդը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, իր խաղաղ ստեղծագործական աշխատանքով՝ Ստալինյան Կոնստիտուցիայի արևի տակ առաջ էր ընթանում դեպի կոմունիզմ։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և սովետական կարգերի հաստատման 24-րդ տարում հիտլերյան ֆաշիստական Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա։ 1941 թվականի հունիսի 22-ին գերմանական զինված ուժե-

րը անցան Սովետական Միության պետական սահմանը և շարժվեցին դեպի երկրի խորքը։

Գերմանա-ֆաշիստական հորդաները, օգտվելով ուխտադրուժ և հանկարծակի հարձակումից, չնայած Կարմիր Բանակի զորամասերի հերոսական դիմադրությանը, կարճ ժամանակամիջոցում կարողացան զավթել զգալի տերիտորիա։ Հիտլերյան մարդակերների ուղին ծածկված էր կախաղաններով և ներկված էր սովետական խաղաղ քաղաքացիների արյունով։

Հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակման տասներկուերորդ օրը մեծ առաջնորդ ընկեր Ստալինը ռադիոյով դիմեց սովետական ժողովրդին։ Լիակատար պարզությամբ և հանճարեղ խորաթափանցությամբ ընկեր Ստալինը բնորոշեց հիտլերյան Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի հայրենական ազատագրական պատերազմի բնույթը, մեր Հայրենիքի վրա կախված լուրջ վտանգը, և տվեց բոլշևիկյան պարտիայի ու սովետական ժողովրդի գործողությունների կոնկրետ ծրագիրը սոցիալիստական Հայրենիքի ազատության և անկախության համար, Մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու համար մղվող պայքարում։

Ընկեր Ստալինը Սովետական Բանակին



և սովետական ժողովրդին կոչ արեց խորտակել գերմանական զավթիչների ռազմական ուժը, բնաջնջել գերմանական օկուպանտներին, որոնք մեր երկիրն էին ներխուժել սովետական ժողովրդին ստրկացնելու համար։ Առաջնորդվելով մեծ Ստալինի իմաստուն, ծրագրային ցուցումներով, Սովետական Բանակն ու սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ հերոսաբար մարտնչում էին յուրաքանչյուր թիզ սովետական հողի համար, յուրաքանչյուր բնակավայրի համար, ցուցաբերելով մեծագույն արիություն և տոկունություն։

Պատերազմի ընթացքում գերմանա-ֆաշիստական բանակների ռազմական գործողությունների տեմպերն ու մասշտաբները հետզհետե նվազում էին, իսկ Սովետական Բանակի մարտական գործողությունների մասշտաբներն ու տեմպերը, ընդհակառակը, գնալով ավելի ու ավելի էին աճում։ 1942 թվականի աշնանը, մեր ժամանակների հանճարեղ զորավար ընկեր Ստալինի մշակած ստրատեգիական պլանով Ստալինգրադի մոտ շրջապատվեց և ապա ջախջախվեց գերմանա-ֆաշիստական զորքերի մի մեծ խմբավորում՝ բաղկացած

300 հազար մարդուց։ «Ստալինգրադը գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտն էր։ Ստալինգրադյան ջարդից հետո, ինչպես հայտնի է, գերմանացիները այլևս չկարողացան ուշքի գալ»,— ասաց ընկեր Ստալինը։

1943 թվականը եղավ պատերազմի ընթացքի մեջ արմատական բեկման տարի։ Սովետական Բանակի կադրերն աճեցին ու կոփվեցին, նրա հրամանատարական կազմը մարտերի փորձ ձեռք բերեց։

1943 թվականը բեկման տարի եղավ ոչ միայն պատերազմական գործողությունների ընթացքի մեջ, այլև թիկունքում։ Սովետական ժողովուրդն անձնվեր աշխատանքով, բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ, պատերազմական դժվարին պայմաններում կարողացավ իր հարազատ բանակն ապահովել թշնամուն ջախջախելու համար անհրաժեշտ ամեն ինչով։ Մեր սոցիալիստական արդյունաբերությունը ռազմաճակատին տալիս էր ավելի ու ավելի մեծ քանակությամբ առաջնակարգ ռազմական տեխնիկա, իսկ կոլխոզային գյուղատնտեսությունը ռազմաճակատն ու թիկունքն ապահովում էր պարենամթերքով, արդյունաբերությանը՝ հումքով։



1943 թվականը բեկման տարի եղավ նաև երկրորդ համաշխարհային պատերազմի ամբողջ ընթացքի մեջ, ՍՍՌՄ միջազգային դրության մեջ։ 1943 թվականի սեպտեմբերին ֆաշիստական Իտալիան՝ հիտլերյան Գերմանիայի գլխավոր դաշնակիցը անվերապահորեն կապիտուլյացիայի ենթարկվեց և դուրս եկավ պատերազմից։ Ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունն ամրապնդեց ՍՍՌՄ-ի միջազգային դրությունը և բարձրացրեց Սովետական Միության հեղինակությունը միջազգային ասպարեզում։

Հաջորդ՝ 1944 թվականը հանդիսացավ Սովետական Բանակի վճռական հաղթանակների տարի։ Սովետական Բանակը, հմտորեն իրականացնելով Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հանճարեղ ստրատեգիական պլանը, տասը հիտևողական հուժկու հարվածներ հասցրեց գերմանական զորքերին։ Այդ խորտակիչ հարվածների հետևանքով լրիվին ազատագրվեցին Սովետական Միության այն շրջանները, որոնք ժամանակավորապես օկուպացվել էին գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից, և ֆաշիստական ճիվաղները լրիվին վռնդվեցին սովետական հողից։

Կարմիր Բանակը սովետական ժողովրդի կամքով սկսեց իրականացնել իր ազատագրական մեծ միսիան։ Կարճ ժամանակամիջոցում սովետական զորքերը սրընթաց և հմուտ գործողություններով գերմանա-ֆաշիստական զավթիչներից ազատագրեցին Լեհաստանը, Չեխոսլովակիան, Արևելյան Պրուսիան ու գերմանական Սիլեզիայի մեծ մասը և հասան Բեռլինի մատույցներին։

Ջախջախելով գերմանա-ֆաշիստական զորքերի բեռլինյան խմբավորումը և ոչնչացնելով նրանց պաշտպանական կառուցումները, սովետական զորքերը կատարեցին Գերագույն Գլխավոր Հրամանատար՝ Գեներալիսիմուս Ստալինի հրամանը. 1945 թ. մայիսի 2-ին հաղթանակի դրոշը բարձրացրին ռայխստագի վրա և ամբողջապես գրավեցին Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը՝ գերմանական իմպերիալիզմի կենտրոնն ու գերմանական ագրեսիայի որջը։

1945 թվականի մայիսի 8-ին գերմանական զինված ուժերի ջախջախված մնացորդները անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվեցին։ Ընկեր Ստալինը 1945 թվականի մայիսի 9-ին ժողովրդին ուղղած դիմումի մեջ ասաց.



«Այժմ մենք կարող ենք լիակատար հիմք ունենալով հայտարարել, որ հասել է Գերմանիայի վերջնական ջախջախման պատմական օրը, գերմանական իմպերիալիզմի դեմ մեր ժողովրդի տարած մեծ հաղթանակի օրը։ Մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մեր մեծ զոհաբերությունները, պատերազմի ընթացքում մեր ժողովրդի կրած անթիվ անհամար զրկանքներն ու տառապանքները, Հայրենիքի զոհասեղանին նվիրված լարված աշխատանքը թիկունքում և ռազմաճակատում՝ ապարդյուն չանցան և պսակվեցին լիակատար հաղթանակով ընդդեմ թշնամու»։

Հիտլերյան Գերմանիայի կապիտուլյացիայից հետո Հեռավոր Արևելքում դեռ շարունակվում էր իմպերիալիստական Ճապոնիայի պատերազմը դաշնակիցների դեմ։ Սովետական կառավարությունը, հավատարիմ իր դաշնակցային պարտքին, 1945 թվականի օգոստոսի 9-ին պատերազմական վիճակ հայտարարեց ընդդեմ ֆաշիստական Ճապոնիայի, որը սպառնալիք էր հանդիսանում խաղաղությանը Արևելքում։

Սովետական Միության միանալը Ճապոնիայի դեմ մղվող պատերազմին, Սովետական Բանակի զորամասերի սրընթաց

հարձակումը և նրանց կողմից ճապոնական զորքերի մի նշանակալի մասսայի ջախջախումը Ճապոնիային հարկադրեցին կապիտուլյացիայի ենթարկվել։ 1945 թ. սեպտեմբերի 2-ին Ճապոնիայի պետական և ռազմական ներկայացուցիչները Տոկիոյում ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը։

Սովետական Բանակը պատերազմից դուրս եկավ է՛լ ավելի ամրապնդված, մարտերի բոցերի մեջ կոփված և է՛լ ավելի սպառազինված։ Հայրենական պատերազմի վերջում Սովետական Բանակն իր կազմի մեջ դիվիզիաներ ուներ չորս անգամ ավելի, հրետանի՝ հինգ անգամ, տանկեր՝ տասնհինգ անգամ, ինքնաթիռներ՝ հինգ անգամ ավելի, քան խաղաղ ժամանակ։

Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը Հայրենական Մեծ պատերազմում պաշտպանեց ոչ միայն իր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, այլև Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց հիտլերյան ֆաշիստական Գերմանիայի լծից։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդն հանդիսացող սովետական սոցիալիստական կարգը հաղթանակ տարավ ֆաշիս-



տական Գերմանիայի դեմ մղված պատերազմում։ Սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմը ցույց տվեց սովետական սոցիալիստական կարգերի մեծ առավելությունները։ Սովետական սոցիալիստական կարգն էր, որ ստեղծեց մեր երկրում սոցիալիստական հզոր ինդուստրիա, որի շնորհիվ ռազմաճակատն ապահովվեց թշնամու ջախջախման համար անհրաժեշտ մարտական տեխնիկայով։ Սոցիալիստական կարգն էր, որ հնարավորություն տվեց ռազմական նշանակություն ունեցող հսկայական թվով արդյունաբերական ձեռնարկություններ կարճ ժամանակամիջոցում ՍՍՌՄ արևմտյան շրջաններից փոխադրել երկրի արևելյան շրջանները։ Միայն սոցիալիստական կարգն էր, որ կարողացավ բաժան- բաժան, մանր անհատական գյուղացիական տնտեսություններից ստեղծել հզոր մեքենայացված կոլխոզային ու սովխոզային տնտեսություններ, որոնք Հայրենական պատերազմի ընթացքում անխափան կերպով պարենամթերք էին մատակարարում բնակչությանն ու բանակին, և հումք՝ արդյունաբերությանը։ Միայն սոցիալիստական կարգի շնորհիվ հնարավոր դարձավ ստեղծել մեծաթիվ սովետական ինտելիգենցիա, որը կարճ ժամանակամիջոցում

կարողացավ Կարմիր Բանակում հրամանատարական պոստեր գրավել, թիկունքում հսկայական օգնություն ցույց տվեց ռազմական տեխնիկայի կատարելագործման և նրա արտադրությունը կազմակերպելու գործում, բանվորներին և կոլխոզային գյուղացիությանն օգնեց արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքի ասպարեզում:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարում Սովետական Բանակին խոշոր օգնություն ցույց տվին պարտիզանական ջոկատները, որոնք մեծ Ստալինի կոչով կազմակերպվեցին թշնամու թիկունքում: Նրանք հանկարծակի հարձակվում էին ֆաշիստական կայազորների վրա, ավերում կամուրջները, կոմունիկացիաները, կոտորում ֆաշիստական ճիվաղներին, սարսափ տարածում նրանց վրա: Հենց միայն սովետական պարտիզանները՝ ժողովրդական վրիժառուները ոչնչացրին ավելի քան 500 հազար գերմանական զինվոր ու սպա:

Հայրենական պատերազմում հաղթանակ տարավ սովետական կենսարար հայրենասիրությունը, հաղթանակ տարավ ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան մեծ բարեկամությունը, ամբողջ ուժով դրսևորվեց Սովետական Միության ժողովուրդների ազգային շահերի միասնությունը:



Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված Հայրենական Մեծ պատերազմը Սովետական Միության բոլոր ժողովուրդների համար դարձավ սրբազան պատերազմ հանուն իրենց ազգային գոյության, հանուն Հայրենիքի, հանուն սոցիալիզմի: ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան անխորտակելի բարեկամությունն է, ավելի ամրապնդվեց Հայրենական պատերազմում համատեղ թափած արյամբ, երբ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ ազատագրված նախկին ճնշված ազգերը ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ անձնվիրաբար մարտնչում էին անարգ թշնամուն ջախջախելու համար:

ՍՍՌ Միության բոլոր եղբայրական ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը ակտիվ մասնակցություն ունեցավ թշնամու ջախջախման գործում: Հայ ժողովրդի լավագույն զավակները մեկնեցին ռազմաճակատ և հերոսական Սովետական Բանակի շարքերում քաջաբար մարտնչում էին բոլոր ռազմաճակատներում: Հայկական Թամանյան Կարմրադրոշ, Կուտուզովի 2-րդ աստիճանի և Կարմիր Աստղի շքանշանակիր դիվիզիան, Սովետական Բանակի մյուս զորամասերի հետ միասին, գրոհեց ֆաշիստական Գերմանիայի որջի՝ Բեռլինի վրա և մասնակցեց

այնտեղ հաղթանակի դրոշը բարձրացնելուն։ Հայրենական պատերազմի ճակատներում ցուցաբերած արիության և հերոսության համար Սովետական Միության Հերոսի բարձր կոչման արժանացածների թվում կան հայ ժողովրդի ավելի քան 100 պանծալի զավակներ։

Սովետական Հայաստանի բանվորները, կոլխոզնիկներն ու ինտելիգենցիան թիկունքում անձնվիրաբար աշխատում էին ռազմաճակատի համար, իրենց բոլոր ուժերը նվիրաբերելով հարազատ Սովետական Բանակի մարտունակությունն ուժեղացնելու գործին։

Սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողը Լենինի- Ստալինի փառապանծ պարտիան է։ Լենինի-Ստալինի պարտիան կազմակերպեց և ղեկավարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը, երիտասարդ սովետական իշխանության հաղթանակը քաղաքացիական պատերազմում, արդյունաբերության ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը մեր երկրում, Լենինի- Ստալինի պարտիան ոգեշնչեց Սովետական Բանակի ու ՍՍՌՄ ժողովուրդների հաղթանակը Հայրենական



Մեծ պատերազմում։ Մարտական իրադրության ամենածանր պայմաններում կոմունիստները ցուցաբերում էին չտեսնված հերոսություն և անձնվիրություն, հանդիսանալով քաջության ու խիզախության օրինակ։

Պատերազմի ընթացքում անչափ աճեց բոլշևիկյան պարտիայի հեղինակությունը։ Պատերազմի տարիներին պարտիայի շարքերը մտավ մոտ 2 և կես միլիոն մարդ։ Պատերազմի ժամանակ պարտիան է՛լ ավելի հարազատացավ ժողովրդին, է՛լ ավելի սերտ կապվեց աշխատավորների լայն մասսաների հետ։

Ընկեր Ստալինը սովետական ժողովրդին ոգեշնչեց հակահարված տալու թշնամուն, նա անձամբ մշակեց գերմանա-ֆաշիստական բանակի ջախջախման ստրատեգիական պլանը, նա ղեկավարում էր Սովետական Բանակի գործողությունները, և սովետական ժողովրդին հաղթանակի հասցրեց։

❊❊❊

Դեռ պատերազմի ընթացքում, ժամանակավորապես օկուպացված սովետական շրջանների ազատագրմանը զուգընթաց, այնտեղ սկսվեց ֆաշիստական օկուպանտների կողմից ավերված գործարանների, ֆաբրիկաների, բնակավայրերի, կոլխոզների ու սովխոզների վերականգնումը։

Հայրենական պատերազմում Սովետական Միության տարած պատմական հաղթանակների վեհ պատկերը և սոցիալիստական հասարակության ուժերի հետագա զարգացման հոյակապ ծրագիրը ընկեր Ստալինը ծավալուն կերպով տվեց Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվականի փետրվարի 9-ին ունեցած իր ելույթի մեջ։ Ընկեր Ստալինը խոսեց ժողովրդական տնտեսության զարգացման հետպատերազմյան նոր հնգամյա պլանի մասին, որի հիմնական խնդիրներն են վերականգնել և գերազանցել արդյունաբերության ու գյուղատնտեսության մինչպատերազմյան մակարդակը։

«Մենք պետք է ամենակարճ ժամանակամիջոցում բուժենք այն վերքերը,— ասաց ընկեր Ստալինը,— որ թշնամին հասցրել է մեր երկրին, և վերականգնենք ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը այնպես, որ մոտակա ժամանակներում զգալիորեն գերազանցենք այդ մակարդակը, բարձրացնենք



ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապնդենք Սովետական պետության ռազմա- տնտեսական հզորությունը»։

Ի՞նչ արդյունքների է հասել Սովետական Միությունը այս խնդիրների լուծման համար մղվող պայքարում։

Հետպատերազմյան հնգամյակի առաջին երկու և կես տարվա ընթացքում ՍՍՌ Միության տնտեսական խոշորագույն հաղթանակն է հանդիսանում այն, որ մեր երկիրը կարողացավ հասնել ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման չտեսնված արագ, իսկական բոլշևիկյան տեմպերի։ Եթե 1947 թվականի առաջին եռամսյակում արդյունաբերական արտադրանքի քանակն աճել էր 12 տոկոսով, ապա երկրորդ եռամսյակում այդ աճը հասամեց արդեն 18 տոկոս, երրորդ եռամսյակում՝ 26 տոկոս և չորրորդ եռամսյակում՝ 30 տոկոս։ Դա մեր պարտիային և կառավարությանը հնարավորություն տվեց 1948 թվականին է՛լ ավելի բարդ խնդիրներ դնել ժողովրդական տնտեսության առջև։

1948 թվականի առաջին եռամսյակում ամբողջ արդյունաբերության համախառն

արտադրանքի աճը, նախորդ 1947 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, բարձր էր 32 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի հարաճուն վերելքը շարունակվում էր այս տարվա նաև երկրորդ ու երրորդ եռամսյակների ընթացքում։

Սովետական ժողովուրդը հայրենասիրական աշխատանքով վստահորեն առաջ է ընթանում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Ամսեամիս ավելանում է արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ Արդեն 1947 թվականի հոկտեմբերին ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ նախապատերազմյան մակարդակին։ Այդ ցույց է տալիս, որ մեր երկրում պայմաններ են ստեղծված ժողովրդի բարեկեցության արագ վերելքի և սովետական պետության հզորության հետագա ամրապնդման համար։

«Սովետական կարգերը լիակատար հնարավորություն են ապահովում արտադրողական ուժերի անընդհատ վերելքի և քաղաքի ու գյուղի աշխատավորների բարեկեցության անընդհատ աճման համար, մի բան, որ չկա և չի կարող լինել ոչ մի կապիտալիստական երկրում» (Մոլոտով)։

Սովետական կառավարությունը, հետպատերազմյան երկրորդ տարում արդեն կարո-



ղացավ վերացնել պարենային ու արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմը և անցնել ծավալուն սովետական առևտրի։ Դրամական ռեֆորմը, որ պատերազմից հետո անցկացվեց մեր երկրում, ֆինանսական-տնտեսական բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ սովետական էկոնոմիկայի հետագա ամրապնդման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Սովետական ժողովուրդը իր հերոսական աշխատանքով 1948 թվականի ինն ամսվա ընթացքում հսկայական հաջողությունների է հասել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանների կատարման բնագավառում։ Այդ մասին փայլուն կերպով վկայում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության՝ օրերս հրապարակված հաղորդագրությունը «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1948 թվի պետական պլանի երրորդ եռամսյակի կատարման արդյունքների մասին»։

1948 թվականի երրորդ եռամսյակի պլանը ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով կատարված է 107 տոկոսով։ Արդյունաբերության համա-

խառն արտադրանքի 1948 թ. տարեկան պլանով 9 ամիսների համար սահմանված առաջադրանքը գերակատարված է 6 տոկոսով։ 1948 թվականի ինն ամիսների ընթացքում արդյունաբերության համախառն արտադրանքը նախապատերազմյան 1940 թվականի միջին մակարդակից անցել է 14 տոկոսով, այդ թվում սեպտեմբեր ամսինը՝ 26 տոկոսով։

Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1948 թվականի երրորդ եռամսյակում՝ 1947 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ՝ աճել է 11 տոկոսով, այդ թվում մեքենաշինության մեջ՝ 15 տոկոսով, մետալուրգիական արդյունաբերության մեջ՝ 18 տոկոսով, ածխարդյունաբերության մեջ՝ 10 տոկոսով։ Ինքնարժեքի իջեցման գծով նույնպես, մեր սոցիալիստական արդյունաբերությունն զգալի հաջողություններ է ձեռք բերել։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից արտապլանային ընդհանուր խնայողությունը 1948 թվականի 9 ամիսների ընթացքում կազմում է ավելի քան 4 միլիարդ ռուբլի։

Հատկապես ուշադրավ է արդյունաբերության կարևորագույն ճյուղերի արագ աճը։ Մետալուրգիական արդյունաբերությունն



այս տարվա երրորդ եռամսյակի պլանը կատարել է 113 տոկոսով։ Այս տարի, մասնավորապես, հաղթահարվեց ածխարդյունաբերության հետամնացությունը։ ՍՍՌ Միության արևմտյան շրջանների ածխարդյունաբերությունը 1948 թվականի երրորդ եռամսյակի պլանը կատարել է 103 տոկոսով։ Ավտոմոբիլային և տրակտորային արդյունաբերությունը 1948 թվականի երրորդ եռամսյակի պլանը գերակատարել է 13 տոկոսով։ Եռամսյակային պլաններն զգալիորեն գերակատարել են տրանսպորտային մեքենաշինությունը, նավթարդյունաբերությունը, քիմիական, սննդարդյունաբերության ձեռնարկությունները և այլն։

Այս տարվա ընթացքում զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև Հայկական ՍՍՌ արդյունաբերության զարգացման գործում։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման պետական պլանի կատարման արդյունքներն այս տարվա ինն ամսվա ընթացքում վկայում են նոր վերելքի մասին, հրնգամյակը չորս տարում կատարելու համար մղվող պայքարի նոր հաջողությունների մասին, դրանք ցույց են տալիս տնտեսական զարգացման թափի զգալի աճումը 1947 թվականի համեմատությամբ։ Հայկական

ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվականի երրորդ եռամսյակի պլանը կատարված է 106,6 տոկոսով, որը անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ 22,7 տոկոս աճ է տալիս։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվականի ինն ամսվա պլանը կատարվել է 103,5 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվականի ինն ամսվա ընթացքում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 20,2 տոկոսով։ Ընթացիկ տարում արդյունաբերության աշխատանքի բնորոշ գիծն է հանդիսանում ավելի բարձր կազմակերպվածությունը։ Պլանը գերակատարում են արդյունաբերության համարյա բոլոր ճյուղերը։

Ներկայումս մեր արդյունաբերության բոլոր աշխատողների ուշադրության կենտրոնում են գտնվում, ամենից առաջ, որակական ցուցանիշների բարելավման հարցերը։ Բացառիկ նշանակություն է ստանում պայքարը հումքի, էլեկտրաէներգիայի խնայողության, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար։



Մեր արդյունաբերության, ինչպես և ամբողջ ժողովրդական տնտեսության կարևորագույն խնդիրն է՝ տեխնիկայի անընդհատ կատարելագործումը, պայքարը աշխատանքային պրոցեսների մեքենայացման համար, որովհետև «աշխատանքային պրոցեսների մեքենայացումը,— ասում է ընկեր Ստալինը, —մեզ համար այն նոր ու վճռական ուժն է, առանց որի անհնարին է դիմանալ ոչ մեր տեմպերին, ոչ արտադրության նոր մասշտաբներին»։

Պարտիան և Սովետական կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում աշխատանքային պրոցեսների մեքենայացմանը, այդ է վկայում, մասնավորապես, Ստալինյան մրցանակների շնորհումը արտադրության նովատորներին։

1948 թվականի գյուղատնտեսական աշխատանքներում մեծ հաջողություններ է ձեռք բերել մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը, որն այս տարվա բերքահավաքը ավելի հաջող կատարեց, քան անցյալ տարի։ Մինչև հոկտեմբերի 10-ը հավաքված է 10 միլիոն հեկտարով ավելի հացահատիկային կուլտուրաների բերք, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը այս տարի հասավ նախապատերազմյան 1940

թվականի մակարդակին, իսկ հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը անցավ նախապատերազմյան մակարդակից։

Սոցիալիստական գյուղատնտեսության մեծագույն առավելությունն ապացուցող ցայտուն փաստ է այն, որ եթե Ֆրանսիայում առաջին համաշխարհային պատերազմից հետո հացահատիկի արտադրության նախապատերազմյան մակարդակին հասնելու համար պահանջվեց 11 տարի, իսկ Գերմանիայում՝ 16 տարի, ապա ՍՍՌ Միությունը, չնայած պատերազմի ծանր հետևանքներին և 1946 թվականի երաշտին, 1948 թվականին արդեն ստացավ հացահատիկի նույնքան բերք, որքան նախապատերազմյան շրջանի լավագույն տարիներին։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումը նշեց հետպատերազմյան շրջանում գյուղատնտեսության վերելքի ծավալուն ծրագիրը։ Փետրվարյան պլենումի պատմական որոշումը խոշորագույն իրադարձություն հանդիսացավ մեր երկրի կոլխոզային գյուղացիության կյանքում։ Կենսագործելով այդ որոշումը, կոլխոզային գյուղացիությունը խոշոր հաջողություններ է ձեռք բերում գյուղատնտեսական կուլտուրաների բերքա-



տվության բարձրացման գործում։ 1947 թվականին հաջողությամբ կատարվեցին գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները։ Ամեն օր թերթերում հրապարակվում են մարզերի, երկրամասերի, շրջանների նորանոր ռապորտներն ընկեր Ստալինին՝ հացամթերումների այս տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու մասին, պլանից ավելի պետությանը միլիոնավոր փութ հացահատիկ հանձնելու մասին։

Սոցիալիստական գյուղատնտեսության նըկատմամբ Սովետական կառավարության և ընկեր Ստալինի հայրական հոգատարության շնորհիվ աճել է գյուղատնտեսության առաջավորների մի վիթխարի բանակ։ Հենց միայն 1947 թվականին Սովետական Միության մեջ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվել սոցիալիստական հողագործության մոտ 2000 առաջավորների և ավելի քան 56 հազար մարդ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Գյուղատնտեսության առաջավորներն զգալի չափով գերակատարեցին հնգամյա պլանի պահանջները բերքատվության ասպարեզում։ Հնգամյա պլանով նախատեսվում է հեկտարից 12 ցենտներ հացահատիկային կուլտուրաների

բերքատվություն, այնինչ գյուղատնտեսության առաջավորներն արդեն յուրաքանչյուր հեկտարից ստանում են 30-ական ցենտներ և ավելի բերք։ Առաջավորների փորձը պետք է դարձնել բոլոր կոլխոզնիկների սեփականությունը։

Ներկայումս հատուկ նշանակություն է ստանում կոլխոզներում կարգապահությունն ամրապնդելու համար մղվող պայքարը։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի գործում կոչված է հսկայական դեր կատարելու սովետական առաջավոր ագրոբիոլոգիական գիտությունը, որը հենվում է Միչուրինի ուսմունքի վրա։ Ահա՛ թե ինչու քաղաքական և ժողովրդատնտեսական հսկայական նշանակություն ունի պայքարը սովետական ագրո-բիոլոգիական գիտության մակարդակը բարձրացնելու, սովետական գիտության խորթ բուրժուական թեորիաները մերկացնելու ուղղությամբ։ Գյուղատնտեսական գիտությունների Լենինի անվան Համամիութենական Ակադեմիայի սեսիան, որը քննարկեց ակադեմիկոս Լիսենկոյի զեկուցումը բիոլոգիական գիտության վիճակի մասին, խոշոր իրադարձություն հանդիսացավ մեր երկրի կյանքում։



Լիսենկոյի զեկուցումը, որն ստացել էր ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հավանությունը, արտահայտում է բոլշևիկյան պարտիայի կարծիքը բիոլոգիական գիտության հարցերում։ Պարտիան, անձամբ ընկեր Ստալինը, առաջավոր մատերիալիստական բիոլոգիայի համար փրկեցին Միչուրինի ուսմունքը, բարձրացրին միչուրինյան ուղղությունը բիոլոգիայի մեջ։ Դրանով է՛լ ավելի ամրապնդվեցին մարքսիստական-լենինյան աշխարհայացքի բնագիտական հիմքերը։ Մենդել—մորգանյան ռեակցիոն իդեալիստական ուսմունքի գաղափարական ջախջախումը մարքսիստական-լենինյան մատերիալիստական աշխարհայացքի խոշոր հաղթանակն է։

Բիոլոգիական գիտության բնագավառում ծավալված պայքարը մի մասն է կազմում այն ընդհանուր պայքարի, որ պարտիան մղում է իդեոլոգիական ճակատում մեզ խորթ հայացքների դեմ, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ։

❊❊❊

Ռուս մեծ ժողովրդի եղբայրական աջակցությամբ ՍՍՌՄ բոլոր ռեսպուբլիկաներում բուռն թափով զարգացող սովետական կոլ-

տուրայի հաջողությունները վկայում են, թե որքան մեծ, որքան անսպառ են Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ ազատագրված մեր երկրի ժողովուրդների հոգևոր ուժերը։ Ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում ասաց. «Մենք ուզում ենք բոլոր բանվորներին և բոլոր գյուղացիներին դարձնել կուլտուրական ու կրթված, և մենք ժամանակի ընթացքում կանենք այդ բանը»։

Կապիտալիստական ոչ մի երկրում չկա և չի կարող լինել այնպիսի հոգատարություն ժողովրդի կուլտուրայի և լուսավորության մասին, ինչպես մեզ մոտ, Սովետական Միության մեջ։ ՍՍՌՄ-ում տարրական և միջնակարգ դպրոցներում սովորում է ավելի քան 30 միլիոն աշակերտություն, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ ավելի քան 1 միլիոն 670 հազար ուսանողություն։ Քաղաքական և գիտական գիտելիքները դառնում են ժողովրդի ավելի ու ավելի լայն մասսաների սեփականություն, ընդարձակվում է նրանց կուլտուրական մտահորիզոնը։ Քաղաքական և գիտական գիտելիքների պրոպագանդան, որ հսկայական ծավալ է ընդունել մեր երկրում, ավելի ու ավելի մեծ չափով մեր մարդկանց մեջ զարգացնում է սովետական հայրենա-



սիրության զգացմունքը, դաստիարակում է անհաշտելի վերաբերմունք դեպի կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ, դեպի ստրկամտությունն ու ստորաքարշությունը ժամանակակից բուրժուական նեխած կուլտուրայի առջև։

Կոմունիզմի կառուցման և մարդկանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկները վերացնելու համար մղվող պայքարի ներկա ժամանակաշրջանում, հատուկ նշանակություն է ստանում աշխատավորների իդեոլոգիական դաստիարակությունը։ Իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պատմական որոշումները հսկայական դեր խաղացին սովետական գրականության և արվեստի վիճակը բարելավելու գործում։

Մի քանի օր առաջ սովետական ժողովուրդը նշեց մարքսիզմ-լենինիզմի ստալինյան հանճարեղ երկի՝ «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման 10-ամյակը, մի երկ, որը նշանավոր դեր խաղաց սովետական ժողովրդի կոմունիստական դաստիարակության գործում։ Սովետական ժողովրդի պայքարի այս տարիները Լենինի-Ստալինի մեծ գաղափարնե-

րի կենսունակության և անպարտելիության մի նոր վկայություն են հանդիսանում։



Ներկայումս մեր ամբողջ երկիրը համակված է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությամբ։ Մեր լայնածավալ Սովետական երկրի բոլոր ծայրերից տեղեկություններ են գալիս արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու մասին։ Հազարավոր ձեռնարկությունների կոլեկտիվներ պարտավորվել են հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանը կատարել մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը։ Հենց միայն Մոսկվայում այդպիսի հայրենասիրական պարտավորություն են ստանձնել ավելի քան 800 առաջավոր ձեռնարկություններ։

1948 թվականի պլանի կատարման գործում խոշորագույն դեր է խաղում սոցիալիստական մրցությունը։ Դեռ երբեք մեր երկրում մրցությունն այնպիսի լայն թափ չէր ընդունել, ինչպես ներկայումս։ Մոսկվայում և Լենինգրադում մրցությանն ակտիվորեն մասնակցում են բոլոր բանվորների ու ծառայողների ավելի քան 90 տոկոսը։ Լայնորեն



ծավալելով սոցիալիստական մրցությունը, մեր երկրի աշխատավորները հաջողությամբ պայքարում են հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար։ Արդեն կան բազմաթիվ ստախանովական բանվորներ, բանվորների ամբողջ խմբեր որոնք կատարել են իրենց հնգամյա պլանները և այժմ աշխատում են 1951—1952 թվականների հաշվին։

ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների հետ միասին, Սովետական Հայաստանի աշխատավորությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը դիմավորում է նորանոր նվաճումներով։ Ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբրիկաններում և շինարարություններում ծավալվել է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը։ Մոսկվայի ձեռնարկությունների օրինակով, Սովետական Հայաստանի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները լրացուցիչ պարտավորություններ են ստանձնել հումքի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի խնայողության, արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու ուղղությամբ։ Սևանշինի, Կիրովականի Քիմիական գործարանի, Երևանի Կաբելի գործարանի, Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանի, Շինանյութերի

գործարանի կոլեկտիվներն իրենց հայրենասիրական նախաձեռնություններով օրինակ են ծառայում ռեսպուբլիկայի մյուս ձեռնարկությունների համար։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները ընկեր Ստալինին ուղղված նամակում պարտավորվել են մինչև 1948 թվականի վերջը տալ ավելի քան 60 միլիոն ռուբլու գերպլանային սոցիալիստական կուտակում։

Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը դեպի Հոկտեմբերյան տարեդարձն է ընթանում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման նորանոր ցուցանիշներով։ Բազմաթիվ կոլխոզներ, բրիգադաներ, օղակներ և կոլխոզնիկներ պատվով են կատարում մեծ Ստալինին ուղղած նամակում ստանձնած իրենց պարտավորությունները։ Ռեսպուբլիկայի կոլխոզները սեպտեմբերի 1-ին կատարեցին հացամթերման պետական պլանը։ Գյուղատնտեսության առաջավորների, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների օրինակով բազմաթիվ կոլխոզնիկներ բարձր բերք են աճեցրել։ Արտաշատի շրջանի առաջավոր բամբակագործներ Շ. Հարությունյանը, Թ. Առաքելյանը և ուրիշներ ռեկորդային օրինակներ են տալիս, հավաքե-



լով օրական մինչև 430 կիլոգրամ բամբակ։ Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունն անձնվիրաբար պայքարում է ընկեր Ստալինին տված խոստումը լրիվ կատարելու համար։

Ներկայումս հնգամյակի երրորդ վճռական տարվա վճռական եռամսյակի եռուն օրերն են։ Սովետական Միության աշխատավորությունը անձնվեր պայքար է ծավալում հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանների գերակատարումով ապահովելու համար հետպատերազմյան Ստալինյան հնգամյակի կատարումը չորս տարում։

❋❋❋

Սովետական ժողովուրդը վստահ քայլերով, խաղաղ ստեղծագործական աշխատանքով, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ընթանում է դեպի կոմունիզմի կառուցումը։ Սովետական Միությունն անշեղորեն վարել է և շարունակում է վարել խաղաղության ու միջազգային համագործակցության հետևողական քաղաքականություն։

Երկրորդ համաշխարհային պատերազմը նոր հարված հասցրեց կապիտալիզմի սիստեմին։ Իմպերիալիզմի շղթայից դուրս ընկան Լեհաստանը, Ռումինիան, Բուլղարիան,

Չեխոսլովակիան, Հունգարիան, Ալբանիան և ուրիշ երկրներ, որտեղ ժողովրդական լայն մասսաների աջակցությամբ դեմոկրատական համարձակ վերափոխումներ են կատարվում, լիկվիդացվել է կալվածատերերի դասակարգը և հողը հանձնվել է գյուղացիներին, ազգայնացվել են խոշոր արդյունաբերությունն ու բանկերը։ Այդ երկրները յուրահատուկ ուղիներով ընթանում են դեպի սոցիալիզմ։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծվեց քաղաքական ուժերի նոր դասավորություն — մեկ կողմում իմպերիալիստական հակադեմոկրատական լագերը, մյուս կողմում՝ հակաիմպերիալիստական, դեմոկրատական լագերը։ Իմպերիալիստական լագերի հիմնական առաջավոր ուժն է ԱՄՆ-ը, որի հետ դաշնակցած են Անգլիան և Ֆրանսիան։ Հակաիմպերիալիստական, հակաֆաշիստական լագերի հիմքն են կազմում ՍՍՌ Միությունը և նոր դեմոկրատիայի երկրները։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստներն ավելի ու ավելի սանձարձակ են դառնում, նրանք ձգտում են ռազմական մոլուցքով շշմեցնել ավելի մեծ թվով հասարակ մարդկանց։ Ընկ. Վիշինսկին 1948 թ. սեպտեմբերի



25-ին Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեյի պլենար նիստում ասաց. «Այդ պրոպագանդան ուղեկցվում է Սովետական Միության և նոր դեմոկրատիայի երկրների ագրեսիվության մասին զրպարտիչ հերյուրանքների տարածմամբ, դրանով հետապնդելով Սովետական Միությունը ոչ-դեմոկրատական երկիր պատկերացնելու, իսկ ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան և անգլո-ամերիկյան բլոկի մյուս երկրները որպես դեմոկրատական պետություններ պատկերացնելու նպատակ։ Այս բոլորը ուղեկցվում է սպառազինության կատաղի մրցավազքով և ՍՍՌՄ-ի ու նոր դեմոկրատիայի երկրների վրա հարձակման պլանների մշակումով ու այլ ռազմական միջոցառումների նախապատրաստումով»։

Անգլո-ամերիկյան ռեակցիոներներն ամեն տեսակ միջոցներ են ձեռք առնում ապագա ռազմական ավանտյուրաների համար ռազմա-օդային բազաներն ընդարձակելու և ուժեղացնելու ուղղությամբ։ ԱՄՆ-ը 1948-1949 թվականի իր բյուջեում ռազմական ծախսերն ավելացրել է 4 միլիարդ դոլլարով։ Ամերիկյան ռեակցիոներները փորձում են «Մարշալի պլանի» միջոցով ստրկացնել եվրոպական երկրները, իրենց դոլլարային քաղաքականու-

թյան շնորհիվ նրանք արդեն որոշ ազդեցություն են ձեռք բերել տնտեսապես թույլ մի շարք երկրների վրա։ Սակայն ակներև է, որ «Մարշալի պլանը» և այդ պլանի առաջադրած խնդիրները տապալվում են, որ մի շարք երկրներ արդեն սկսել են բացեիբաց անբավականություն հայտնել այսպես կոչված՝ «Մարշալի պլանից»։ Միլիոնավոր հասարակ մարդիկ, որոնք իրենց արյամբ հատուցեցին ֆաշիստական ղավթիչների, համաշխարհային երկրորդ պատերազմը կազմակերպողների ոճրագործությունների համար, չեն կարող թույլ տալ պատերազմի կրկնություն, որը սոսկալի աղետներ ու տառապանքներ կբերի ամբողջ մարդկության համար։

Դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի հաջողություններից սարսափած՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի կառավարող շրջանները ձգտում են վերականգնել Գերմանիայի ու Ճապոնիայի ռազմա-տնտեսական պոտենցիալը։ Դրա համար նրանք իրականացնում են Գերմանիայի բաժանումը երկու մասի։ Գերմանիայի ամերիկյան, անգլիական ու ֆրանսիական օկուպացիոն գոտիները ամերիկյան իմպերիալիստների ջանքերով ռազմական նոր ավանտյուրաների բազա են դարձվում Եվրոպա-



յում։ Արևմտյան Գերմանիան մտցվում է «Մարշալի պլանի» մեջ և բանակցություններ են տեղի ունենում նրան Արևմտյան ռազմական բլոկի մեջ մտցնելու հարցի շուրջը։

Որ միջազգային ռեակցիայի լագերը պայքարի ավելի ու ավելի ծայրահեղ միջոցների է դիմում, այդ մասին է վկայում նաև կապիտալիստական երկրներում լայնորեն ծավալվող տեռորի, կոմունիստների և դեմոկրատական լագերի մյուս մարտիկների դեմ ուղղված հալածանքների ալիքը։

Ազատասեր ժողովուրդների պայքարը ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիայի դեմ՝ անշեղորեն ուժեղանում է և նորանոր շրջաններ ու տասնյակ միլիոնավոր մարդիկ է ընդգրկում։ Սովետական Միությունն ուժեղ պայքար է մղում հաստատուն դեմոկրատական խաղաղություն ստեղծելու համար, պատերազմի իմպերիալիստական հրձիգների սանձահարման, դեմոկրատական սոցիալիստական ճակատի հետագա համախմբման համար։

Ռեակցիայի և դեմոկրատիայի ուժերի միջև կատաղի պայքար է ծավալված Հունաստանում։ Եվրոպայի այդ հատվածում իմ-

իմպերիալիստները խոշոր պարտություններ են կրում։ Նրանք խոշոր պարտություններ են կրում նաև Ասիայում, հատկապես Չինաստանում։

Ժողովրդա-ազատագրական պատերազմի հրդեհն ավելի ու ավելի լայն է տարածվում Չինաստանի հարևան երկրներում։ Վերջին ժամանակներս այդ հրդեհն ընդգրկել է Բիրման ու Մալայան, որոնց ստրատեգիական նշանակությունը խիստ մեծ է իմպերիալիզմի համար։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստները հուսահատ փորձեր են անում, որպեսզի խեղդեն Ասիայի ժողովուրդների այդ պայքարը։

Ինչի՞ մասին են խոսում ժամանակակից միջազգային այս իրադարձությունները։ Դրանք ցույց են տալիս, որ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը, որոնք մեծապես գերազանցում են իմպերիալիստական լագերի ուժերին, հաջող հակահարձակում են կատարում միջազգային ռեակցիայի դեմ։

Կայուն խաղաղության և ժողովրդական դեմոկրատիայի համար պրոգրեսիվ մարդկության կողմից մղվող պայքարի ավանգարդում է ընթանում սովետական հերոս ժողովուրդը։ Մեր մեծ Հայրենիքը խաղաղության ու դեմոկրատիայի հաստատուն



և հուսալի հենարանն է ամբողջ աշխարհում։ Սովետական Միությունը Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց գերմանա-ֆաշիստական լծից և նրանց օգնեց ոտք դնելու սոցիալիզմի ուղին։ Հզոր Սովետական Միության ազդեցությունը հեշտացրեց կալվածատերերի ու կապիտալիստների իշխանության տապալումը Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի երկրներում, ռեակցիայի ջախջախումը այդ երկրներում։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները մտել են միասնական սոցիալիստական ճակատի մեջ, որին գլխավորում է Սովետական Միությունը։

Լենինի-Ստալինի հզոր պարտիայի անպարտելի ուժը կրկին անգամ դրսևորվեց եղբայրական կոմունիստական պարտիաների ամրապնդման մեջ, որոնք վերջին ժամանակներս լուրջ հաջողություններ են ձեռք բերել բանվոր դասակարգի քաղաքական միասնության համար մղվող պայքարում։ Ռումինիայում, Հունգարիայում, Չեխոսլովակիայում, Բուլղարիայում արդեն ստեղծվել են բանվոր դասակարգի միասնական պարտիաներ։ Այդպիսի միասնական պարտիա ստեղծվում

է նաև Լեհաստանում։ Այդ միասնությունը ստեղծվեց կոմունիստների ղեկավարությամբ բանվոր դասակարգի լայն մասսաների մղած պայքարով՝ հանուն բանվոր դասակարգի միասնական ռևոլյուցիոն պարտիայի, որն ընդունակ լինի այդ երկրները տանելու դեպի սոցիալիզմ։



Սովետական Միության ժողովուրդները, որոնք Հայրենական պատերազմում արիաբար պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները, այժմ, հետպատերազմյան շրջանում, վստահորեն լուծում են իրենց առջև դրված պատմական խնդիրները, չնայելով իմպերիալիստական պետությունների նոր պրովոկացիաներին։ Լենինի-Ստալինի պարտիան սովետական ժողովրդին համարձակ կերպով առաջ է տանում դեպի կոմունիզմ։ «Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմ» (Մոլոտով)։

Ընկեր Ստալինը մեր ժողովրդին առաջնորդել և առաջնորդում է կոմունիզմի փառապանծ ուղիով։



«Ստալինի անունով Սովետական Միության բանվոր դասակարգը անօրինակ աշխատանքային սխրագործություն կատարեց Հայրենական Մեծ պատերազմում, Կարմիր Բանակին առաջնակարգ մարտական տեխնիկա և զինամթերք մատակարարելով։

Ստալինի անունով կոլխոզային գյուղացիությունն անձնվիրաբար աշխատում էր դաշտերում, Կարմիր Բանակին և քաղաքներին պարենամթերք, իսկ արդյունաբերությանը՝ հումք մատակարարելով։

Ստալինի անունով սովետական ինտելիգենցիան նվիրված աշխատում էր երկրի պաշտպանության գործի համար, կատարելագործում էր Կարմիր Բանակի սպառազինությունը, արտադրության տեխնիկան ու կազմակերպումը, առաջ էր մղում սովետական գիտությունն ու կուլտուրան։

Ստալինի անունով ամբողջ սովետական ժողովուրդը հաջողությամբ բուժում է պատերազմի հասցրած վերքերը և պայքարում է ժողովրդական տնտեսության ու սովետական կուլտուրայի նոր հուժկու վերելքի համար։

Ստալինի անունը սովետական ժողովրդի արիության սիմվոլը, նրա փառքի սիմվոլն է, մեր մեծ Հայրենիքի բարօրության համար նորանոր հերոսական գործեր կա-

*տարելու կոչը» (Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին։ Համառոտ կենսագրություն։ էջ 157—158)։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունները պետք է մոբիլիզացնեն իրենց ուժերը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքային նոր հուժկու վերելք ստեղծելու համար, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում հաջողությամբ կատարելու համար։*

*Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ՝ առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։*

---

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՊԼԱՆ

*1. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը։*

*2. Լենինի-Ստալինի պարտիան որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի կազմակերպող ու ղեկավարող ուժ։*

*3. Սոցիալիստական հասարակության կառուցումը մեր երկրում։ Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում։ Լենինի-Ստալինի պարտիան որպես սովետական հասարակության ղեկավարող և ուղղություն տվող ուժ։*

*4. Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը։ ՍՍՌՄ-ի ժողովուրդների հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում որպես սովետական հասարակակարգի, սովետական պետական կարգի և սովետական զինված ուժերի հաղթանակ։*

*5. ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը, որպես մի նոր խոշոր ա-*

Առաջընթաց քայլ ՍՍՌՄ հիմնական տնտեսական խընդիրների կատարման, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու գործում։

6. Սովետական ժողովրդի պայքարը ստալինյան հետպատերազմյան հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար։ Սոցիալիստական մրցությունը որպես կոմունիզմի կառուցման մեթոդ։

7. Քաղաքական ուժերի նոր վերադասավորումը պատերազմից հետո և երկու լագերների առաջացումը— մի կողմից իմպերիալիստական, հակադեմոկրատական լագերը ԱՄՆ-ի իմպերիալիստների գլխավորությամբ, մյուս կողմից՝ հակաիմպերիալիստական դեմոկրատական լագերը, որի հիմքն են ՍՍՌՄ-ը և Նոր դեմոկրատիայի երկրները։

8. Դեմոկրատական ու պրոգրեսիվ ուժերի աճումն ամբողջ աշխարհում։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները որպես դեմոկրատական ուժերի հաղթանակի լուսատու փարոս։

9. Սովետական պետության ստալինյան արտաքին քաղաքականությունը, նրա հետևողական պայքարը ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար, դեմոկրատական ուժերի համախմբումը ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։

---

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի տարեդարձի առթիվ: *Քաղհրատ, 1941 թ.*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: *Հայպետհրատ, 1947 թ.*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան և ռուսական կոմունիստների տակտիկան: *«Լենինիզմի հարցերը», 1940 թ., էջ 102—135։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը: *«Լենինիզմի հարցերը», 1940 թ., էջ 220—229։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, 1946 թ.*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին: *«Լենինիզմի հարցերը», 1940 թ., էջ 618—651։*

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի պատմության համառոտ դասընթացը: 9—12-րդ գլուխները: Հայպետհրատ, 1946 թ.:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին: Հայպետհրատ, 1945 թ.:

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ: Համառոտ կենսագրություն: Հայպետհրատ, 1947 թ.:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին: ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1947 թ. փետրվարյան պլենումի որոշումը, ընդունված ընկեր ԱՆԴՐԵԵՎԻ զեկուցման առթիվ: «Սովետական Հայաստան», 1947 թ. №№ 50 և 51:

Մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության դեկլարացիան միջազգային դրության նարցի շուրջը: «Սովետական Հայաստան», 1947 թ. № 235:

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին: «Սովետական Հայաստան», 1947 թ., № 250:

ՕՐԵՆՔ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին: Հայպետհրատ, 1946 թ.:

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակը (զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1947 թ. նոյեմբերի 6-ին): «Պարտիական կյանք», 1947 թ. № 6:



Ն. ՎՈԶՆԵՍԵՆՍԿԻ.— ՍՍՌՄ ռազմական էկոնոմիկան Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում: Հայպետհրատ, 1948 թ.:

Ա. ՅԱ. ՎԻՇԻՆՍԿԻ.— Ճառ Գլխավոր Ասամբլեյի պլենար նիստում 1948 թ. սեպտեմբերի 25-ին: «Սովետական Հայաստան», 28 սեպտեմբերի, 1948 թ.:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական Վարչության հաղորդագրությունը (ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1948 թվի պետական պլանի երրորդ եռամսյակի կատարման արդյունքների մասին): «Սովետական Հայաստան», 16 հոկտեմբերի 1948 թ.:

Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը (Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1948 թվի երրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին): «Սովետական Հայաստան», 22 հոկտեմբերի 1948 թ.:

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

1. ԿԱՐԼ ՄԱՐՔՍ.— «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը»: *Հայպետհրատ: Տիրաժ 5000, 328 էջ, գինը՝ կազմով 8 ռ., 1948 թ.:*

2. Ֆ. ԷՆԳԵԼՍ.— «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը»: *Հայպետհրատ: Տիրաժ 6000, 262 էջ, գինը՝ կազմով 8 ռ., 1948 թ.:*

3. Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 4-րդ հատոր: *Հայպետհրատ: Տիրաժ 5000, 596 էջ, 1948 թ.:*

4. Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ընտիր երկեր երկու հատորում, հատոր առաջին: *Հայպետհրատ: Տիրաժ 6000, 929 էջ, գինը՝ 20 ռ., 1948 թ.:*

5. Փիլ. գիտ. թեկնածու Ա. ՅԱ. ՋԻՍ.— «Կոմունիստական բարոյականության մասին»: *Հայկական ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատարակություն: Տիրաժ 4000, 54 էջ, գինը՝ 1ռ., 1948 թ.:*

6. ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ.— «Գերմանաթյուրքական զավթիչների գործակալության ձախողումը Կովկասում»: *Հայպետհրատ: Տի-*



*րաժ 3000, 202 էջ, գինը՝ կազմով 10 ռ., 1948 թ.:*

7. Տնտ. գիտութ. թեկնածու ԱՐ. ՄԱՐՈՒԽՅԱՆ.— «Գյուղացիության դրությունը նախասովետական Հայաստանում»: *Պետական Համալսարանի հրատարակություն: Տիրաժ 1000, 136 էջ, գինը՝ 15 ռ., 1948 թ.:*

8. Գ. ՍԱՐՈՆԻՆ.— «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության սոցիալիստական պլանավորումը»: *Հայպետհրատ: Տիրաժ 5000, 110 էջ, գինը՝ 2 ռ., 1948 թ.:*

9. Պրոֆ. Ֆ. Վ. ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎ.— «Առաջավոր իդեաների դերը հասարակական զարգացման մեջ»: *Հեռ. Մանկ. ինստիտուտի հրատարակություն: Տիրաժ 1500, 61 էջ, գինը՝ 3 ռ., 1948 թ.:*

10. ԱՎԵՏԻՔ Գ. ՏԵՐ-ՊՈՂՈՍՅԱՆ.— «Բիոլոգիական այլանդակությունները և նրանց գիտական բացատրությունը»: *Հայկական ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատարակություն: Տիրաժ 4000, 38 էջ, գինը՝ 2 ռ., 1948 թ.:*

11. Գ. Ֆ. ՏԱՐԱՆՈՎ.— «Աշխատանքը կոլտնտեսային մեղվանոցում»: *Հայպետհրատ: Տիրաժ 1500, էջ 151, գինը՝ 5 ռ., 1948 թ.:*

12. Դոցենտ Հ. Գ. ԹՈՒՄԱՆՅԱՆ.— «Պրտ-

դատու ծառերի վնասատուները և պայքարը նրանց դեմ»: *Հայպետհրատ։ Տիրաժ 2000, 68 էջ, գինը՝ 4 ռ., 1948 թ.։*

13. Գյուղատնտ. գիտ. թեկնածու Հ. Տ. ՍՄԲԱՏՅԱՆ.— «Աշնանացան ցորենի բարձր բերքի ագրոտեխնիկան» *(«Սպարտակ» կոլխոզի Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձի ամփոփումը)։ Հայկական ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատարակություն։ Տիրաժ 2000, 44 էջ, գինը՝ 1 ռ., 1948 թ.։*

14. Ֆիլոլ. գիտ. թեկնածու ՌՈՒԲԵՆ ԶԱՐՅԱՆ.— «Հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյան»։ *Հայպետհրատ։ Տիրաժ 2500, 40 էջ, գինը՝ 2 ռ., 1948 թ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 04525 Պատվեր № 740 Տիրաժ 9.300
Ստորագրված է տպագրության 25/X 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора



